Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




*Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս՝ 2—52—78:*


---

# ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մոտենում է փետրվարի 25-ը՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների օրը: Մեր ռեսպուբլիկայի աշխատավորության համար փետրվարի 25-ը կլինի համաժողովրդական ցնծության օր:*

*Այդ հանդիսավոր օրը Սովետական Հայաստանի աշխատավորները նորից ու նորից կցուցադրեն դեպի Լենինի-Ստալինի փառապանծ պարտիան ունեցած անսահման նվիրվածությունը, դեպի աշխատավոր մարդկության հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի մեծ ազատարար հարազատ Ստալինն ունեցած ջերմ սերը: Լենինի-Ստալինի պարտիայի գլխավորությամբ, մեծ Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կառուցեց սոցիալիստական հասարակարգ և ձեռնամուխ է եղել կոմունիստական հասարակարգի կառուցմանը: Սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու այն հոյակապ ծրագիրը, որը նշեց մեր մեծ առաջ-*

նորդ Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ին իր ընտրողների առաջ կոմունիստական պարտիայի՝ աշխատանքի պլանների մասին տված հակիրճ հաշվետվության մեջ։

Մեծ Ստալինի նախագծած այդ հոյակապ պլանի անշեղ կենսագործման մի փայլուն ապացույց է հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանի հաջող կատարումը։ Նոր հնգամյակի առաջադրանքները գերակատարված են։ Հնգամյակի ընթացքում ոչ միայն լրովին վերականգնվեց պատերազմից տուժած մարզերի և ռեսպուբլիկաների տնտեսությունը, այլև զգալիորեն գերազանցվեց Սովետական Միության ժողովրդական տնտեսության նախապատերազմյան մակարդակը։ Հնգամյա պլանի կենսագործմամբ է՛լ ավելի հզորացած, մեր երկիրը նոր հսկայական քայլերով առաջ է ընթանում դեպի կոմունիզմը, ձեռնարկելով այնպիսի հոյակապ կոթողների շինարարությանը, ինչպիսիք են աշխարհի խոշորագույն Ստալինգրադյան, Կույբիշևյան, ինչպես նաև Կախովկայի հիդրոկայանները, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական, Հյուսիս-Ղրիմյան, Վոլգա-Դոն ջրանցքները, Ցիմլյանսկայա հիդրոհանգույցը։

Գնալով դեպի Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները, հայ ժողովուրդը



հանրագումարի է բերում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության, աշխատավորների բարեկեցության բնագավառում իր ձեռք բերած հաջողությունները, դրանով միաժամանակ ստուգելով, թե ինչպես է գործել այդ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի՝ իր ընտրած Գերագույն օրգանը՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետը, նրա Կառավարությունը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից անցած ժամանակաշրջանում, ինչպես ժողովրդական տնտեսության, այնպես և կյանքի մյուս բոլոր բնագավառներում ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողությունները խոշոր են և աննախընթաց։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ռեսպուբլիկայում կատարվել է ժամկետից շուտ։ Հնգամյա պլանի համաձայն Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ պետք է ավելանար 210 տոկոսով, իսկ փաստորեն ավելացել է 241 տոկոսով։ Արդյունաբերության բնագավառում հնգամյակը կատարվել էր դեռ 1949 թվականի վերջին։ Կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 50 արդյունաբերական նոր ձեռնարկություն։

Ռեսպուբլիկայի հնգամյա պլանը հաջողու-

թյամբ է կատարվել նաև գյուղատնտեսության բնագավառում։ Հացահատիկի համախառն բերքը զգալիորեն գերազանցեց 1940 թվականի մակարդակը։ 1950 թվականին բամբակի համախառն բերքը, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, կազմեց 150 տոկոս, ծխախոտինը՝ 200 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 250 տոկոս, կարտոֆիլինը՝ ավելի քան 300 տոկոս։ Զգալի չափով ավելացել է հանրային անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում։

Հնգամյակի ընթացքում է՛լ ավելի բարձրացավ ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Բավական է ասել, որ 1950 թվականին բանվորի միջին աշխատավարձը, 1940 թվականի համեմատությամբ, բարձրացավ 94,7 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսականների ստացած դրամական եկամուտները համարյա կրկնապատկվել են, իսկ տեխնիկական և թանկարժեք կուլտուրաների շրջանում ավելացել են 4—5 անգամ։ Նոր հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայի քաղաքներում կառուցվել և շահագործման է հանձնվել 265 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն։ Անհատական բնակարանային շինարարության համար պետությունը բաց է թողել 440 միլիոն ռուբլու երկարատև վարկ։



Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանում է՛լ ավելի ծաղկեց ու բարգավաճեց հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, նրա առաջավոր գիտությունը։

Ահա այսպիսի վիթխարի նվաճումներով են Հայաստանի աշխատավորները գնում դեպի Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները։ Այդ նվաճումների համար հայ ժողովուրդը պարտական է բոլշևիկների փառապանծ պարտիային, Սովետական կառավարությանը, հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինին։

Եվ որպեսզի է՛լ ավելի հզորանա, ծաղկի ու բարգավաճի մեր Հայրենիքը, Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես նախորդ ընտրություններին, այս անգամ ևս միահամուռ կերպով իրենց ձայնը կտան կոմունիստների և անկուսակցականների ստալինյան անպարտելի բլոկի թեկնածուների օգտին։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության ամբողջ շրջանում ագիտատորները աշխատավորներին պատմում էին ինչպես ամբողջ Սովետական Միության, այնպես և մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումների մա-

սին, յուրաքանչյուր ընտրողի սեփականությունը դարձնում այդ։ Ընտրությունների նախապատրաստության շրջանում մեծ նշանակություն ունեցող այդ կարևոր գործը ագիտատորները պետք է շարունակեն ընդհուպ մինչև ընտրությունների օրը։

Մինչև ընտրությունները մնացած ժամանակաշրջանում ագիտատորները պետք է շարունակեն ընտրողներին պատմել դեպուտատության իրենց թեկնածուի կյանքի ու աշխատանքային գործունեության մասին, օգնեն ընտրողներին դեպուտատության թեկնածուի հետ ունենալիք հանդիպումներին, նախընտրական ժողովներին ու միտինգներին մասնակցելու։ Ագիտատորները պետք է հանդիսանան ընտրությունների կազմակերպչական աշխատանքների ակտիվ մասնակիցները ընտրական տեղամասում։

Որքան մոտենում է փետրվարի 25-ը, այնքան ավելի ու ավելի է բարձրանում ռեսպուբլիկայի աշխատավորների խանդավառությունը։ Ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում, գործարաններում, նորակառույցներում ու կոլտնտեսություններում աշխատավորները անձնվեր աշխատանքով պայքարում են Հայրենիքը փառաբանող նորանոր նվաճումներով դիմավորել համաժո-



ղովրդական տոնը՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները։

Հայ ժողովուրդը անսահման երջանիկ է, որ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության իր առաջին թեկնածուն է սովետական ժողովրդի բոլոր հաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող մեծ Ստալինը և մեծագույն բերկրանքով սպասում է փետրվարի 25-ի օրվան՝ իր ձայնը տալու բոլշևիկների պարտիայի, հարազատ հայր Ստալինի օգտին, Սովետական կառավարության օգտին։

Հանուն կոմունիստների և անկուսակցականների ստալինյան անխախտ բլոկի հաղթանակի, համախմբված Լենին-Ստալինի պարտիայի, մեծ Ստալինի հաղթական դրոշի ներքո, բոլորս մեկ մարդու պես գնանք դեպի Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները։

—∞—

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Նյութեր զրույցների համար)

1951 թվականի փետրվարի 23-ին լրանում է Սովետական Բանակի 33-րդ տարեդարձը։ 33 տարի առաջ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի և քաղաքացիական պատերազմի բոցերում ստեղծվեց Կարմիր Բանակը, որը անցել է մարտական փառահեղ ուղի։

Հանձինս Կարմիր Բանակի, պատմության մեջ առաջին անգամ ռևոլյուցիոն պրոլետարիատն ու աշխատավոր գյուղացիությունը ունեցան իրենց զինված ուժերը, սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործական աշխատանքի հերոսական պաշտպանը։

Կարմիր Բանակը իր ստեղծման հենց առաջին օրվանից պահպանելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճումները սովետական իշխանության ներքին և արտաքին թշնամիների ոտնձգություն-



ներից՝ տարավ համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաղթանակ և ապահովեց մեր Հայրենիքի ժողովուրդների ազատությունն ու անկախությունը։

Երիտասարդ Կարմիր Բանակի ջոկատները 1918 թվականի փետրվարի 23-ին, առաջին անգամ մտնելով պատերազմի մեջ, Պսկովի և Նարվայի մոտ գլխովին ջախջախեցին գերմանական զավթիչներին։ Այդ օրը դարձավ Սովետական զինված ուժերի տոնի օր, որը տրադիցիոն կերպով ամեն տարի տոնում են մեր երկրի աշխատավորները։

1918—1920 թվականներին նորաստեղծ Կարմիր Բանակը Լենինի և Ստալինի ղեկավարությամբ ջախջախեց Ամերիկայի և Անգլիայի կողմից խրախուսված օտարերկրյա 14 տերությունների հրոսակախմբերին և սպիտակ-գվարդիական կոնտրռևոլյուցիոն ուժերին, դուրս մղեց նրանց մեր երկրի սահմաններից։ Այդպիսով, միջազգային իմպերիալիզմի ռազմական առաջին հարձակումը ավարտվեց լիակատար ձախողմամբ։

Սոցիալիստական շինարարության խաղաղ տարիներին Կարմիր Բանակն աճեց ու հզորացավ։ Լենինը և ընկեր Ստալինը հատուկ ուշադրություն են դարձրել Սովետական Բանակին, անընդհատ հոգ են տարել նրա

հրամանատարական կադրերի աճեցման ու դաստիարակման, այն ժամանակակից մարտական տեխնիկայով սպառազինելու մասին։

Շնորհիվ երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան իմաստուն և հեռատես քաղաքականության կենսագործմանը, պարտիային և սովետական պետությանը հաջողվեց նյութական հնարավորություններ ստեղծել, տեխնիկապես վերազինել ՍՍՌՄ-ն, ստեղծել ժողովրդական ամբողջ տնտեսության համար տեխնիկական նորագույն բազա։

Հաստատուն և հետևողական կերպով կիրառելով խաղաղության քաղաքականությունը, բոլշևիկների պարտիան և սովետական կառավարությունը միաժամանակ երկիրը պահում էին մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում, գործադրում էին բոլոր միջոցները, որպեսզի նրան նախապատրաստեն ակտիվ պաշտպանության, որպեսզի մեր երկիրը չենթարկվի պատահականություններին։ Ակտիվ պաշտպանության համար կարևոր միջոց հանդիսացավ երկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը։

Այսպիսով, բոլշևիկների պարտիայի, մեծ Ստալինի ղեկավարությամբ սովետական ժո-



ղովուրդը սոցիալիստական շինարարության խաղաղ տարիներին անդուլ կերպով ամրապնդում էր իր Բանակի հզորությունը։ Այդ հզորությունը փայլուն կերպով դրսևորվեց գերմանական ֆաշիզմի և ճապոնական իմպերիալիզմի դեմ մղած սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, երբ հանճարեղ զորավար ընկեր Ստալինի ղեկավարությամբ, նրա ստրատեգիական պլաններով, քաջարի Սովետական Բանակը, ամբողջ սովետական ժողովրդի անդուլ օգնությամբ, գլխովին ջախջախեց և դուրս շպրտեց մեր երկրից ֆաշիստական զավթիչներին։

Սովետական Բանակի համար մեծագույն փորձություն հանդիսացավ Հայրենական Մեծ պատերազմը։ Այդ փորձությանը պատվով դիմացան մեր Բանակը, ավիացիան և Ռազմա-Ծովային նավատորմը։ «Կարմիր Բանակը,— գրել է ընկեր Ստալինը,— հերոսաբար դիմացավ պատերազմի բոլոր ձախորդություններին, գլխովին ջախջախեց մեր թշնամիների բանակները և պատերազմից դուրս եկավ հաղթող»։

Միայն սովետական ժողովուրդը կարող էր դիմանալ Հայրենական Մեծ պատերազմի ահեղ փորձություններին, միայն Սովետական Բանակը կարող էր նվաճել այդպիսի հա-

մաշխարհային-պատմական հաղթանակ, որովհետև Սովետական Բանակը գիտեր, որ նա պաշտպանում է սոցիալիզմի նվաճումները, պաշտպանում է խաղաղության գործը ամբողջ աշխարհում։

Հայրենական Մեծ պատերազմի ամենածանր օրերին, երբ թշնամին հասել էր Մոսկվայի պատերի տակ, ընկեր Ստալինը սովետական ռազմիկներին ասում էր. «Ամբողջ աշխարհը ձեզ է նայում, որպես այն ուժին, որն ընդունակ է ոչնչացնելու գերմանական զավթիչների թալանչիական հրոսակախմբերը։ Ձեզ են նայում, որպես իրենց ազատարարների, Եվրոպայի ստրկացված ժողովուրդները, որոնք ընկել են գերմանական զավթիչների լծի տակ։ Ձեզ մեծ ազատագրական միսիա է բաժին ընկել։ Ուրեմն, արժանի՛ եղեք այդ միսիային»։

Սովետական ռազմիկներն արժանի գտնըվեցին այդ մեծ ազատագրական միսիային։ Սովետական հերոս Բանակի մարտիկները պատերազմի առաջին շրջանում ակտիվ պաշտպանությամբ քայքայեցին հիտլերական բանակի հարվածող ուժերը և թաղեցին «կայծակնային» պատերազմի ֆաշիստական ստրատեգիան։ 1941 թվականի վերջերին գերմանական զորքերը ջախջախվեցին Մոսկվայի մատույցներում։ 1942 թվականի



վերջերին և 1943 թվականի սկզբներին Սովետական զորքերը գերմանացիներին ջախջախեցին Ստալինգրադի տակ։ Սովետական Բանակը այդ փայլուն հաղթանակներով վերջնականապես խլեց թշնամուց ստրատեգիական նախաձեռնությունը, հսկայական ճակատով անցավ վճռական հարձակման և 1943 թվականի վերջին ազատագրեց օկուպացված սովետական տերիտորիայի երկու երրորդը։ Սովետական Բանակի այդ հաղթանակը ընկեր Ստալինը անվանեց Հայրենական Մեծ պատերազմի արմատական բեկման ժամանակաշրջան։

1944 թվականին Սովետական Բանակը թշնամուն հասցրեց ստալինյան 10 խորտակիչ հարվածներ, որով ամբողջ սովետական հողը ազատագրեց գերմանա-ֆաշիստական զավթիչներից, Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց ֆաշիստական լծից։ 1944 թվականի աշնանից մինչև 1945 թվականի մայիսը ընկած ժամանակաշրջանը հանդիսանում է Սովետական Միության, նրա զինված ուժերի՝ գերմանական ֆաշիզմի դեմ տարած վերջնական հաղթանակի ժամանակաշրջան, երբ Սովետական Բանակը խորտակեց հիտլերականների բոլոր ամրությունները Արևելյան Պրուսիայում, Վիսլայի և Օդերի միջև,

ջախջախեց ֆաշիստական հրոսակախմբերին և գրավեց ֆաշիզմի գլխավոր որջը՝ Բեռլինը։

Ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո, Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը, պատերազմի մեջ մտնելով իմպերիալիստական Ճապոնիայի դեմ, կարճ ժամանակամիջոցում ջախջախեցին Մանջուրիայում գտնվող կվանտունյան բանակը։ Ճապոնական իմպերիալիզմը սովետական բանակի հուժկու հարվածներից անվերապահորեն կապիտուլյացիայի ենթարկվեց։

Թշնամիների դեմ մղած պայքարում կոփվելով, Սովետական Բանակը վերածվեց մասսայական հերոսական բանակի։ Ավելի քան 7 միլիոն սովետական զինվորներ, նավաստիներ, սպաներ ու գեներալներ Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում պարգևատրվեցին ՍՍՌ Միության շքանշաններով ու մեդալներով։ 11 հազար սովետական ռազմիկներ արժանացել են Սովետական Միության Հերոսի կոչման։

Սովետական Միության ժողովուրդների հետ միասին Հայրենական պատերազմի ռազմաճակատում արիաբար մարտնչում էին նաև հայ ժողովրդի քաջարի զավակները։ Ավելի քան 50 հազար հայ զինվորներ, սպաներ ու գեներալներ պարգևատրվեցին ՍՍՌ



Միության շքանշաններով ու մեդալներով, 110 հայ ռազմիկներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման։

Սովետական Բանակի մեծագույն ծառայությունը մարդկության առաջ կայանում է նրանում, որ նա, ջախջախելով ֆաշիստական Գերմանիային և իմպերիալիստական Ճապոնիային, Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց ֆաշիստական կեղեքիչներից, Արևելյան Ասիայի ժողովուրդներին՝ Ճապոնական զավթիչներից, աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ջարդարարներից։

Ընկեր Ստալինը բազմիցս նշել է, որ Սովետական Բանակի հաղթանակները պատահական չեն, որ նրանք ունեն խորը սոցիալական հիմք, որ Սովետական հերոս Բանակի պատմական հաղթանակների մեջ մարմնավորված է սոցիալիստական կարգերի ուժը, սովետական բազմազգ ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության ուժը։

Ընկեր Ստալինը մեզ ուսուցանում է, որ Հայրենական Մեծ պատերազմում ՍՍՌՄ-ի հաղթանակի պատճառները պետք է փնտրել ամենից առաջ մեր սոցիալիստական հասարակական և պետական կարգերի առա-

վելությունների մեջ։ Սովետական հասարակարգը հաջողությամբ դիմացավ պատերազմի բոլոր փորձություններին, ապացուցեց իր կենսունակությունը, հզոր ուժը և անվիճելի առավելությունները կապիտալիստական հասարակարգի նկատմամբ, հենց այդ առավելությունների շնորհիվ է, որ սովետական ժողովրդին, նրա հերոս Բանակին հաջողվեց ջախջախել այնպիսի մի վտանգավոր թշնամու, ինչպիսին էր գերմանական ֆաշիզմը։

Շնորհիվ լենինյան-ստալինյան հեռատես և իմաստուն քաղաքականության, նախկինում հետամնաց մեր երկիրը դարձավ այնպիսի հզոր ինդուստրիալ երկիր, որը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սովետական զինված ուժերին լիովին ապահովեց ռազմական տեխնիկայով, ռազմապաշարով, հանդերձանքով և պարենով։ Բավական է նշել, որ պատերազմի վերջին երեք տարիներին ՍՍՌՄ-ի ռազմական արդյունաբերությունը յուրաքանչյուր տարի արտադրում էր ավելի քան 30 հազար տանկ, ինքնագնաց հրանոթ և զրահամեքենա, մինչև 40 հազար ինքնաթիռ, մինչև 120 հազար զանազան կալիբրի հրանոթ, 450 հազար ձեռքի և հաստոցավոր գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրա-



ցան և մոտ 2 միլիոն ավտոմատ, մինչև 100 հազար ականանետ։ Զինված առաջավոր տեխնիկայով, Սովետական Բանակի ռազմիկները Հայրենական Մեծ պատերազմի ռազմաճակատներում ցուցաբերեցին անօրինակ սխրագործություններ։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղած պայքարում սովետական ժողովրդի և բանակի անհաղթահարելի հզոր ուժի աղբյուրը հանդիսացավ սովետական հայրենասիրությունը, բարոյա-քաղաքական միասնությունը և ժողովուրդների բարեկամությունը։

Սովետական Բանակը բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի ղեկավարությամբ դաստիարակվել է ինտերնացիոնալիզմի ոգով, մյուս բոլոր ժողովուրդների միջև խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու ոգով։ Սովետական Բանակի ուժը կայանում է նրա կազմակերպվածության, առաջավոր տեխնիկա և փորձված հրամանատարական կազմ ունենալու մեջ։

Սովետական Բանակը զինված է ստալինյան ամենաառաջավոր ռազմական գիտու-

թյամբ։ Ընկեր Ստալինը մարքսիզմի-լենինիզմի ուսմունքի հիման վրա ստեղծել է սովետական ռազմական գիտությունը և նշել է ռազմական գործի զարգացման ճիշտ ուղիները։ Սովետական Զինված Ուժերի բոլոր հաղթանակները ձեռք են բերվել ստալինյան ստրատեգիայի շնորհիվ, ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ։

Սովետական Բանակի 33-րդ տարեդարձը նշվում է այնպիսի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը, հաջողությամբ ավարտելով հետպատերազմյան հնգամյա պլանի հոյակապ խնդիրները, ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումներին։ Այն ժամանակ, երբ սովետական էկոնոմիկան ապրում է աննախընթաց վերելք, կապիտալիստական երկրների էկոնոմիկան գընում է դեպի անկում։ Այժմ արդեն ակներև է իմպերիալիզմի ճգնաժամի սրումը, հատկապես Ամերիկայում։ Ամերիկյան իմպերիալիզմը, իր ներքին ուժերի նըկատմամբ թերահավատությամբ համակված, տենդագին կերպով ագրեսիվ բլոկներ է կազմակերպում, կառուցում է ռազմական բազաներ, բացահայտ ագրեսիվ պատերազմ է սկսել Ասիայի ժողովուրդների դեմ, վերազի-



նում է գերմանական ջախջախված բանակի մնացորդները և ձգտում է բռնի կերպով հաստատել համաշխարհային տիրապետություն։

Սակայն նրանց հանցագործ պլանները կտապալվեն այնպես, ինչպես տապալվեցին 1918—22 թ. թ. քաղաքացիական և 1941—1945 թ. թ. Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմներում։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները, լցված անհուն սիրով դեպի խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինը, իրենց անդուլ աշխատանքով բարձրացնում են երկրի տնտեսական ու ռազմական հզորությունը։ Ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդները կայուն և երկարատև խաղաղության համար իրենց հույսերը կապում են ՍՍՌՄ-ի խաղաղասիրական քաղաքականության հետ, ընկեր Ստալինի անվան հետ։



# ՆՈՐ, ՊԱՆԾԱԼԻ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՏԱՐԻ

*Հրապարակված է Հայկական ՍՍՌ Վիճակագրական վարչության հաղորդագրությունը՝ «Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին»։*

*Այդ հաղորդագրությունը փայլուն կերպով վկայում է այն մասին, որ Սովետական ողջ Միության հետ միասին Սովետական Հայաստանի աշխատավորությունը բոլշևիկների մեծ պարտիայի ղեկավարությամբ անցյալ, 1950 թվականի ընթացքում, ձեռք է բերել նոր հաջողություններ՝ երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, հետպատերազմյան ստալինյան հնգամյակի վերջին տարվա առաջադրանքի կատարման ու գերակատարման ասպարեզում։ Որո՞նք են 1950 թվականի ընթացքում ձեռք բերված նվաճումները։ Ամենից առաջ անհրաժեշտ է նշել ռեսպուբլիկայի արդյունաբերության*



*Արդյունաբերության
հաջող աշխատանքը։
համախառն արտադրանքի պլանը կատար-
ված է 103 տոկոսով։ Ռեսպուբլիկայի մի-
նիստրությունների ու գերատեսչությունների
մեծ մասը, գերակատարելով 1950 թվականի
պետական առաջադրանքները, միաժամա-
նակ զգալի չափով ավելացրել է ժողովր-
դական տնտեսության համար կարևոր նշա-
նակություն ունեցող արդյունաբերական
ապրանքների տեսակների արտադրությունը։
Այսպես օրինակ՝ էլեկտրաէներգիայի ար-
տադրությունը 1950 թվականին, 1949 թվա-
կանի համեմատությամբ, կազմել է 132 տո-
կոս, ծծմբաթթվինը՝ 141, սուպերֆոսֆա-
տինը՝ 130, ցիանամիդինը՝ 116, ավտոդողե-
րինը՝ 151, ավտոկամերաներինը՝ 150, տր-
րանսֆորմատորներինը՝ 137, մինչև 25 կի-
լովատ գեներատորներինը՝ 447, պղնձահան-
քինը՝ 119, ՌԿ—30 կոմպրեսորներինը՝ 119
տոկոս և այլն։*

*Մեծ են անցյալ տարվա ընթացքում ձեռք
բերված հաջողությունները նաև սոցիալիս-
տական գյուղատնտեսության ասպարեզում։
1950 թվականի ընթացքում գյուղատնտեսա-
կան աշխատանքների հետագա մեքենայաց-
ման և ագրոտեխնիկական միջոցառումների
հաջող կիրառման շնորհիվ զգալի չափով*

բարձրացավ հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։

Այս տարվա ավելի բարձր բերքը ապահովելու նպատակով 1950 թվականի ընթացքում 16 տոկոսով ավելի շատ աշնանացան է կատարվել, քան 1949 թվականին։ Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսություններում ոռոգելի հողերի տարածությունը ավելացել է 5, իսկ վարելահողերինը՝ 2 տոկոսով։ Անցյալ տարվա ընթացքում 18 տոկոսով ավելացել է էլեկտրիֆիկացված կոլխոզների թիվը։

1950 թվականին ռեսպուբլիկայում կատարված կապիտալ աշխատանքների ծավալը նախորդ տարվա համեմատությամբ կազմել է 111 տոկոս։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել տրանսպորտի, առևտրի և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում։

Ոգևորված անցյալ տարվա հաջողություններով, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նոր թափով ու եռանդով ձեռնամուխ են եղել 1951 թվականի պետական պլանների կատարման գործին։





# ՊԱՅՔԱՐ ԿՈԼԵԿՏԻՎ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Երևանի Մահուդի ֆաբրիկայի պարտկազմակերպությունը 1950 թվականի սեպտեմբերին որոշում ընդունեց՝ սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու, ֆաբրիկայում ստախանովականների աշխատանքի լավագույն եղանակները արմատավորելու և առաջավորների ու նորարարների արտադրական փորձը տարածելու միջոցով հասնել «Գերազանց որակի ֆաբրիկայի» կոչման։

Այդ ուղղությամբ առաջին գործը եղավ այն, որ ֆաբրիկայի կոլեկտիվը պարտկազմակերպության ղեկավարությամբ և պրոֆմիութենական կազմակերպության ու ագիտատորների՝ ֆաբրիկայի այդ լավագույն մարդկանց օգնությամբ, ձեռնամուխ եղավ ֆաբրիկայի առաջավորների և նորարարների փորձի մասսայական արմատավորմանը՝ ըստ ինժեներ Ֆ. Կովալյովի մեթոդի։ Մահուդի ֆաբրիկայում իրենց գործի այդպիսի առաջավորներ են՝ մանող մեքենայի ավագ

բանվոր Խ. Խաչատրյանը, ջուլհակուհիներ՝ Ն. Բելյակովան, Ս. Հովհաննիսյանը, Ե. Հարությունյանը, Վ. Մարտիրոսյանը, Շ. Ղազարյանը, Թ. Բարսեղյանը, մանողուհի Ռ. Ղազարյանը և ուրիշներ։

Նորարար Կովալյովի մեթոդը կիրառվեց ֆաբրիկայի մանվածքային և գործվածքային ցեխերում։ Այստեղ վերահսկողություն սահմանվեց այն բանի նկատմամբ, որ ճշտորեն պահպանվեն տեխնոլոգիական պրոցեսները, հատկապես հարդարման գործում։ Սկսվեց ջանասեր ուսուցումը։ Ուսման մեջ ընդգրկվեցին 34 մարդ մանվածքային բաժնում և 78 մարդ գործվածքային բաժնում։ Թե տեսական և թե գործնական պարապմունքներն անց էին կացվում անմիջականորեն դազգահների մոտ։

Ստախանովյան առաջավոր մեթոդները ուսումնասիրելու և աստիճանաբար արմատավորելու շնորհիվ մանողները և գործողները սկսեցին ավելի արագ և ճիշտ կատարել հիմնական աշխատանքային պրոցեսները։ Դրա շնորհիվ նվազեցին կորուստները, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Պարզ պատկերացում տալու համար, թե ինչպիսի հիանալի արդյունքների են հասել



ֆաբրիկայի այն մի շարք բանվոր-բանվորուհիները, որոնք ուսումնասիրել և ընդօրինակել են առաջավորների փորձը, բերենք մի քանի օրինակներ։

Մանածագործը օրական հինգ անգամ մեքենայից պետք է հանի մանվածքը։ Այդ աշխատանքի համար, մինչև ինժեներ Կովալյովի մեթոդի կիրառումը, 2—3 անգամ շատ ժամանակ էր ծախսվում։ Ներկայումս Մահուդի ֆաբրիկայի մանածագործներն, ուսումնասիրելով և ընդօրինակելով լավագույն մանող Խաչատուր Խաչատրյանի եղանակները, այդ աշխատանքը կատարում են 3—4 րոպեում։ Այսպիսով, հերթափոխության ընթացքում բրիգադան, ամբողջությամբ վերցրած, տնտեսում է բավական ժամանակ, որով աշխատանքի արտադրողականությունը բարձրացվում է 6—7 տոկոսով։

Իսկ որո՞նք են մանող Խաչատրյանի աշխատանքի եղանակները։

Ինչպես հայտնի է, մանածագործական մեքենայի բարդ օպերացիաներից մեկը մանվածքի հանումն է։

Նախքան մանվածքը հանելը և այն կարգավորելը Խաչատրյանը կատարում է հետևյալ նախապատրաստական աշխատանքը՝ պատրաստում է արկղները, որոնցից յու-

թաքանչյուրի մեջ երկու շարքով դարսված են մասրանները, ընդորում դասավորումը կատարվում է այնպես, որ երկու շարքում դասավորված մասրաններն իրար դիմաց ընկած լինեն հաստ գլուխներով։ Խաչատրյանը հետևում է, որ մասրանների այս դասավորումը չխախտվի, թելերի կարգավորումը կատարում է նախքան մանվածքը հանելը, քանի որ հանելուց հետո հարդարումն զգալի չափով դժվարանում է։ Նա կողք-կողքի գտնվող երկու մեքենաների մանվածքը երբեք միաժամանակ չի հանում։

Վերցնենք արտադրական փորձի արմատավորման մի ուրիշ օրինակ՝ գործվածքային ցեխում։ Այս ցեխում ստախանովյան աշխատանքի հիանալի արդյունքներ է ձեռք բերել ջուլհակուհի Նադյա Բելյակովան։ Միայն մեկ օպերացիայի վրա նա աշխատանքի տևողությունը կրճատել է 13—14 րոպեով։ Ջուլհակուհիների մեծ մասն ընդօրինակել է նրա փորձը և նույնպես հասել զգալի արդյունքների։

Մաքոքների փոխումը գործող դազգահի վրա կատարվող աշխատանքի ամենից ավելի հաճախ կրկնվող օպերացիաներից մեկն է։ Այդ օպերացիայի ճիշտ կատարումը տնտեսում է աշխատանքային ժամանակը,



իջեցնում է ջուլհակի բեռնվածությունը, բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։

Սահմանված նորմայի համաձայն մաքոքը փոխելը պետք է տևի 3,5 վայրկյան, մինչդեռ Բելյակովան մաքոքը փոխում է 2 վայրկյանում։

Ֆաբրիկայի ղեկավարությունը ուսումնասիրեց և ամփոփեց նորարարներ Խաչատրյանի և Բելյակովայի աշխատանքի ստախանովյան մեթոդները։ Այդ մեթոդները հաստատեց նաև ֆաբրիկայի մեթոդական բյուրոն։ Ինժեներա-տեխնիկական աշխատողների և ագիտատորների օգնությամբ այդ մեթոդները շուտով դարձան ֆաբրիկայի բոլոր բանվոր-բանվորուհիների սեփականությունը։

Ն. Բելյակովայի և Խ. Խաչատրյանի նման նորարարության առաջավորներ շատ կան ֆաբրիկայում։ Մանուդագործները, հենվելով ֆաբրիկայի ստախանովականների առաջավոր փորձի վրա, ամեն կերպ և բոլոր միջոցներով պաշտպանում են աշխատանքի արտադրողականությունը բարձրացնող ամեն մի նոր նախաձեռնություն։ Ֆաբրիկայում բացառիկ մեծ նշանակություն է տրվում աշխատանքի առաջավոր մեթոդների տա-

րաժմանը։ Բոլոր ցեխերում աճում է իրենց գործին տիրապետող վարպետների թիվը։

Մահուդի ֆաբրիկան անցած տարվա ծրագիրը կատարեց լավ ցուցանիշներով։ Կոլեկտիվը համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեց 132,3 տոկոսով։ Պատրաստի մահուդի արտադրման պլանը կատարվեց 121,2 տոկոսով, ընդորում առաջին տեսակի արտադրանքի քանակը, պլանով նախատեսված 87 տոկոսի փոխարեն, կազմեց 96,9 տոկոս, տնտեսվեց 3,5 տոննա հումք։

Ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը մասսայական-քաղաքական լայն աշխատանք է ծավալել, որպեսզի կոլեկտիվը կատարի «Գերազանց որակի ֆաբրիկա»-յի պատվավոր կոչումը նվաճելու իր պարտավորությունը։ Այս գործում ֆաբրիկայի կոլեկտիվին իրական օգնություն է ցույց տալիս նաև ագիտկոլեկտիվը։

Ագիտատորներ՝ ջուլհակուհի Ն. Հարությունյանը, կոմերիտուհի Ժ. Շահբազյանը, գործվածքային ցեխի հերթափոխային վարպետ Հ. Շահմուրադյանը, որակի տեխնիկ Ս. Զաթյանը, գործվածքային ցեխի ավագ վարպետ Գ. Վարդանյանը, հերթափոխային վարպետներ Ռ. Մարգարյանը և Ա. Զաքարյանը,



նորոգման-մեխանիկական ցեխի պետ Լ. Համբարձումյանը և մյուսները, որոնք հանդիսանում են ֆաբրիկայի առաջավոր մարդիկ, իրենց աշխատանքով օրինակ են հանդիսանում ամբողջ կոլեկտիվի համար։ Նրանք բոլշևիկյան խոսքով և անձնական օրինակով ամենօրյա օգնություն են ցույց տալիս պարտկազմակերպությանը՝ մոբիլիզացնելու բոլոր բանվորներին ու բանվորուհիներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին պայքարելու պլանների կատարման ու գերակատարման համար։

Ագիտատորներն իրենց զեկուցումների, զրույցների, և ընթերցանության ժամանակ պարզաբանում են աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորման նշանակությունը, մանրամասնորեն բացատրում են այս կամ այն առաջավոր մեթոդի էությունը։ Հաճախ նրանք իրենց զրույցներն անց են կացնում դազգահների մոտ, որոնց ընթացքում տեղնուտեղը ցույց են տալիս, թե ինչ արդյունք է ստացվում աշխատանքի ստախանովյան այս կամ այն մեթոդի կիրառումից։

Ագիտատորներն իրենց ունկնդիրներին բացատրում են, թե ֆաբրիկան ինչ միջոցներով պետք է հասնի «Գերազանց որակի ֆաբ-

*րիկա»-յի կոչմանը, և թե ինչ պետք է անի այդ ուղղությամբ ֆաբրիկայի ամեն մի աշխատող: Ագիտատորները ստախանովյան աշխատանքի առաջավոր եղանակները մասսայականացնում են նաև ցեխային պատի թերթերի միջոցով, որտեղ սիստեմատիկաբար թղթակցություններ են զետեղում՝ նվիրված առաջավորների փորձին: Ցեխերում փակցված են նորարարների աշխատանքի մեթոդների ուսումնասիրման ու արմատավորմանը նվիրված պլակատներ: Ագիտատորներն ամեն ամիս մասսայականացնում են ցեխերի նվաճումները: Ամսական մեկ անգամ ամփոփվում են ցեխերի աշխատանքի արդյունքները, որի հիման վրա փոխանցիկ Կարմիր դրոշը շնորհվում է ամենից ավելի բարձր ցուցանիշներ ձեռք բերած ցեխին: Անցած տարվա ընթացքում ֆաբրիկան, գերազանց աշխատանքի համար, Թեթև արդյունաբերության մինիստրության կողմից յուրաքանչյուր եռամսյակում արժանացել է փոխանցիկ Կարմիր դրոշի:*

*Կասկած չկա, որ մահուդագործների լավագույն աշխատանքի շնորհիվ Մահուդի ֆաբրիկան կհասնի «Գերազանց որակի ֆաբրիկա»-յի պատվավոր կոչմանը:*

*ԱԼ. ԽՈՍՐՈՎՅԱՆ*



ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՇՈՐԱՑՄԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո մեր երկրի գյուղատնտեսության մեջ, ինչպես և ամբողջ էկոնոմիկայում, տեղի ունեցան արմատական փոփոխություններ:*

*Լենինի—Ստալինի պարտիան սովետական գյուղացիությանը դուրս բերեց զարգացման սոցիալիստական ուղին, մի ուղի, որ պատմական կարճ ժամանակաշրջանում ցույց տվեց իր լիակատար առավելությունը կապիտալիստական ուղու հանդեպ:*

*Մարքս-լենինյան գիտության մեջ անգնահատելի ավանդ է հանդիսանում ընկեր Ստալինի մշակած և նրա ղեկավարությամբ հաջողությամբ կենսագործված գյուղատնտեսության կոլեկտիվացման թեորիան:*

*Գյուղի սոցիալիստական վերափոխման հետեվանքով մեր երկրի գյուղատնտեսու*

թյունը դարձավ ամենախոշոր և ամենամեքենայացված գյուղատնտեսությունը՝ ամբողջ աշխարհում։ Հանրային սեփականության և կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա, նորագույն տեխնիկայի և առաջավոր հայրենական գիտության բազայի վրա, կոլտնտեսություններին պետության կողմից ցույց տրվող մեծ օգնության պայմաններում, հսկայական հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության զարգացման բնագավառում։

Ստալինյան հնգամյակների տարիներին Հայկական ՍՍՌ-ում խոշոր աշխատանք է կատարվել գյուղատնտեսության մեքենայացման գործում։ Տարեց-տարի ավելանում է մեքենա-տրակտորային կայանների թիվը, դրան զուգընթաց աճում է նաև նրանց տրակտորային պարկը։ Հիշյալ ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի դաշտավարության մեջ ներառնվել է առաջներում չօգտագործված 150 հազար հեկտար վարելահող և չորացված հողային տարածություն, որի հետևանքով զգալիորեն ընդարձակվել են դաշտային կուլտուրաների և այգիների տարածությունները։ Դաշտային հիմնական աշխատանքների մեքենայացման, ոռոգելի հողային տարածությունների ընդարձակման ու ագրո-



տեխնիկայի մակարդակի բարձրացման շնորհիվ անընդհատ բարձրանում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, զգալիորեն ավելանում է հանրային անասունների և թռչունների գլխաքանակը։

Տարեց-տարի աճում է կոլտնտեսությունների հանրային հարստությունը։ Հայաստանի կոլտնտեսությունների դրամական եկամուտը 1940 թվականի համեմատությամբ 1949 թվականին համարյա կրկնապատկվեց։ Նախապատերազմյան տարվա համեմատությամբ համարյա երեք անգամ ավելացան արտադրության հիմնական միջոցները։ Այսպես, օրինակ, եթե կոլտնտեսությունների հիմնական արտադրամիջոցները 1940 թվականին կազմում էին 239 միլիոն ռուբլի, ապա 1949 թվականին կազմեցին 640,9 միլիոն ռուբլի։ Աճում է նաև կոլտնտեսականների աշխօրերի արժեքը, որը 1940 թվականի համեմատությամբ 1949 թվականին ավելացավ 46,3 տոկոսով։

Եվ այսպես՝ կոլտնտեսային կարգը, ինչպես խաղաղ շինարարության տարիներին, այնպես էլ պատերազմի տարիներին ցույց տվեց իր անհաղթահարելի ուժն ու կենսունակությունը, որն ապահովեց գյուղատնտեսու-

թյան անշեղ աճը և աշխատավոր գյուղացիության նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացումը։

* * *

Պետության կողմից գյուղատնտեսությանը տրակտորներով, կոմբայններով և նյութական-տեխնիկական այլ միջոցներով, ինչպես նաև մասնագետների կադրերով ցույց տրվող բացառիկ, հարաճուն օգնության շնորհիվ ստեղծվել են բոլոր անհրաժեշտ պայմանները գյուղատնտեսության է՛լ ավելի արագ վերելքի համար։ Սակայն գյուղատնտեսության հետագա վերելքի ճանապարհին լուրջ խոչընդոտ է հանդիսանում ՍՍՌՄ-ում, և մասնավորապես Հայաստանում, մեծ քանակությամբ մանր կոլտնտեսությունների առկայությունը, որոնք իրենց ամրացված հողային տարածությունների չափով չեն կարող բավականաչափ հաջող կերպով զարգացնել հանրային տնտեսությունը։ Կյանքը չափազանց ակնառու ցույց տվեց, որ մանր կոլտնտեսությունները չեն կարող լրիվին օգտագործել խոշոր կոլեկտիվ տնտեսության առավելությունները։ Առհասարակ, որպես կանոն, գյուղատնտեսության ընդհանուր վերելքի ասպարեզում հանրային կոլտնտեսային արտադրության զարգացման և կոլտըն-



տեսականների նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման տեմպերը մանր կոլտնտեսություններում անհամեմատ ավելի ցածր են, քան խոշոր կոլտնտեսություններում։ Հայտնի է, որ մանր կոլտնտեսությունները սահմանափակ հնարավորություններ ունեն տրակտորները, կոմբայնները և գյուղատնտեսական մյուս բարդ մեքենաները բարձր արտադրողականությամբ օգտագործելու համար։ Պարզված է, որ շատ մանր կոլտնտեսություններ մի շարք տարիների ընթացքում չեն կարողացել կատարել որևէ փոքրիշատե խոշոր շինարարություն։ Նրանց համար դժվար է սեփական ուժերով բարեկարգ կոլտնտեսային գյուղեր կառուցելը։

Մանր կոլտնտեսությունների հանդեպ խոշոր կոլտնտեսությունների առավելությունները բավականաչափ ակնառու կերպով պատկերում են ստորև բերվող համեմատական ցուցանիշները՝ Արտաշատի շրջանի երկու խոշոր կոլտնտեսությունների (Վ. Արտաշատ, Նորաշեն գյուղերի) և նույն շրջանի 10 մանր կոլտնտեսությունների (Հողաբերդ, Սաբունչի, Հնաբերդ, Վարդաշեն, Ջիլխանլու, Բարձրաշեն, Ն. Ջրաշեն, Ղարաղոյուն, Վ. Ջրաշեն, Դիմիտրով գյուղերը) մասին, որոնք թեև տնտեսությունների ընդհանուր թը-

վով հավասար են, սակայն ունեն տնտեսա-կան գործունեության միմյանցից խիստ տար-բեր արդյունքներ։

(Կոլտնտեսությունների 1949 թ. տարեկան հաշվետվությունների տվյալներով)

| | Տնտեսություն-ների թիվը | Դրամական եկա-մուտները (հազ. ռուբ.) | Արտադր. հիմնակ. միջոցները (հազ. ռ.) | Անբաժանելի ֆոն-դերը (հազ. ռուբ.) | Վարչա-կառավար-չական ապարատի աշխօրերը |
|---|---|---|---|---|---|
| 2 խոշոր կոլտնտե-սություններում | 761 | 11211 | 4942 | 13320 | 7317 |
| 10 մանր կոլտնտե-սություններում | 768 | 3336 | 4295 | 6016 | 16299 |
| Վարելահողի և այ-գիների մեկ հեկ-տարի ցուցանիշ-ները՝ | | | | | |
| 2 խոշոր կոլտնտե-սություններում | — | 818 | 373 | 1007 | 55 |
| 10 մանր կոլտնտե-սություններում | — | 156 | 202 | 282 | 77 |



Այսպիսով, հիշյալ 2 խոշոր կոլտնտեսու-թյուններում, տնտեսությունների թվով դը-րանց հավասար 10 մանր կոլտնտեսություն-ների համեմատությամբ, 1949 թվականին վարելահողերի և այգիների մեկ հեկտարից ստացված դրամական եկամուտները բարձր են եղել ավելի քան 5 անգամ, արտադրու-թյան հիմնական միջոցները ավելի են եղել մոտ 2 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ 3,5 անգամ, իսկ վարչա-տնտեսական ապարատի վրա ծախսվող աշխօրերի քանակը կրճատվել է 40 տոկոսով։

Ուսումնասիրությունը նաև ցույց է տալիս, որ արտադրության հիմնական միջոցների աճման տեմպերը, որ սոցիալիստական ընդ-լայնված վերարտադրության առավել ցայ-տուն ցուցանիշն է, խոշոր կոլտնտեսություն-ներում շատ ավելի բարձր են, քան մանր կոլտնտեսություններում։ Այսպես՝ եթե մեր վերցրած Արտաշատի շրջանի վերոհիշյալ 10 մանր կոլտնտեսություններում 1940 թվակա-նի համեմատությամբ 1949 թվականին ար-տադրության հիմնական միջոցներն աճել են 2,2 անգամ, ապա 2 խոշոր կոլտնտեսու-թյուններում աճել են 3, 1 անգամ։

Եվ այսպես, մանր կոլտնտեսությունների հանդեպ խոշոր կոլտնտեսությունների առըն-

տեսական առավելությունները միանգամայն ակներև են։ Ահա թե ինչու կոլտնտեսականների լայն մասսաները այնքան կազմակերպված կերպով բռնեցին կոլտնտեսությունների միավորման ուղին։



Սովետական Միության մեջ մանր կոլտնտեսությունների միավորման ուղղությամբ մինչև 1950 թվականը կատարված աշխատանքը դրական արդյունքներ ունեցավ կոլտնտեսությունների ամրապնդման, նրանց հանրային տնտեսության զարգացման և կոլտնտեսականների եկամուտների բարձրացման բնագավառում։ Կոլտնտեսությունների միավորումը մեծ մասշտաբների հասավ, 1950 թվականին։ Մանր կոլտնտեսությունների խոշորացման ուղղությամբ մեծ աշխատանք է կատարվել նաև Հայկական ՍՍՌ-ում։ Ռեսպուբլիկայում կոլտնտեսությունների միավորումն ընթանում է չափազանց հաջող կերպով, կոլտնտեսական լայն մասսաների ակտիվ մասնակցությամբ ու ջերմ պաշտպանությամբ։

Առ 1-ը հունվարի 1950 թվականի, ռեսպուբլիկայում կար 1009 կոլտնտեսություն։ 1950 թվականին 514 կոլտնտեսություններ



միավորվել և կազմել են 219 խոշոր կոլտնտեսություն։

Հայաստանի կոլտնտեսությունների մոտ 50 տոկոսը, մինչև միավորումը, մանր կոլտնտեսություններ էին։ Մանր կոլտնտեսությունների մեջ կային այնպիսիները, որոնք կազմված էին ոչ ավելի, քան 50 տնտեսությունից։ Այդպիսի կոլտնտեսությունների թիվը հասնում էր 159-ի։ Վերջիններից 20 կոլտնտեսություն, մինչև միավորվելը, կազմված էին ընդամենը 15—25 տնտեսությունից։

Կոլտնտեսությունների միավորման ուղղությամբ կիրառված միջոցառումների շնորհիվ զգալիորեն ավելացան նրանց չափերը։ Այսպես, եթե առաջ մինչև 200 տնտեսություն ունեցող կոլտնտեսությունների թիվը կազմում էր 73 տոկոս, ապա այժմ, միավորվելուց հետո, այդ տոկոսն իջել է և հավասար է 54-ի, համապատասխանորեն ավելացել է խոշոր կոլտնտեսությունների թիվը։ Հայկական ՍՍՌ-ում յուրաքանչյուր կոլտնտեսության տնտեսությունների միջին թիվն ավելացել է և 160-ից հասել է 230-ի։

Մեծ փոփոխություններ են կատարվել կոլտնտեսությունների նաև հողային տարածությունների ավելացման գործում։ Այսպես,

օրինակ, եթե մինչև միավորվելը ռեսպուբլիկայի յուրաքանչյուր կոլտնտեսության վարելահողերի տարածությունը միջին հաշվով կազմում էր 545 հեկտար, ապա այժմ այն հասնում է 820 հեկտարի։ Առանձնապես մեծ փոփոխություններ են կատարվել խոշորացված կոլտնտեսություններում, որտեղ միավորվելուց հետո, յուրաքանչյուր կոլտնտեսությունում միջին հաշվով տնտեսությունների թիվը 133-ից հասել է 313-ի, իսկ վարելահողերի տարածությունը 507 հեկտարից՝ 1189 հեկտարի։

Զգալի չափով ավելացել են խոշորացված կոլտնտեսությունների նաև այն հողային տարածությունները, որոնք հարմար են տրակտորներով մշակելու համար։ Կոլտնտեսություններում տրակտորահարմար հողային տարածությունների ավելացումը նպաստեց տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս բարդ մեքենաների օգտագործմանը՝ բարձր արտադրողականությամբ։ Կոլտնտեսությունների խոշորացման կապակցությամբ հնարավորություն ստեղծվեց ավելացնելու տրակտորային աշխատանքների ծավալը և մեկ խոշորացված կոլտնտեսությունում աշխատանքի սեզոնային նորմայով ապահովելու երեք և ավելի տրակ-



տոր ունեցող մեկ և նույնիսկ երկու տրակտորային բրիգադայի։ Հետաքրքրական չէ նշել այն փաստը, որ Վեդու մեքենա-տրակտորային կայանն այժմ սպասարկում է միայն 3 խոշորացված կոլտնտեսությունների։

Կոլտնտեսությունների խոշորացումը ապահովեց կոլտնտեսային անասնապահական ֆերմաների չափի մեծացումը՝ անասունների յուրաքանչյուր տեսակի գլխաքանակի ավելացումը՝ միջին հաշվով 50 տոկոսով։ Այժմ ռեսպուբլիկայում կան 14 այնպիսի կաթնապրանքային ֆերմաներ, որոնցից յուրաքանչյուրն ունի ավելի քան 1000 գլուխ անասուն, 20 այնպիսի ոչխարաբուծական ֆերմաներ, որոնցից յուրաքանչյուրն ունի ավելի քան 5000 գլուխ ոչխար, 30 այնպիսի խոզաբուծական ֆերմաներ, որոնցից յուրաքանչյուրն ունի ավելի քան 300 խոզ։

Կոլտնտեսությունների խոշորացման և գյուղատնտեսությունը առաջնակարգ տեխնիկայով հագեցվելու կապակցությամբ այժմ ավելի բարձր պահանջներ են առաջադրվում կոլտնտեսությունների ղեկավար կադրերին, որոնք պետք է խորապես տիրապետեն ագրոտեխնիկական և զոոտեխնիկական գիտելիքներին, օժտված լինեն կազմակերպական

մեծ ունակություններով և կարողանան ուսումնասիրել գյուղատնտեսության ճկոնոմիկան։

Ռեսպուբլիկայի պարտիական օրգանները խոշոր օգնություն են ցույց տվել կոլտնտեսականներին՝ խոշորացված կոլտնտեսություններում, որպես նախագահներ ընտրելու և առաջ քաշելու գյուղատնտեսության մասնագետներին, ինչպես նաև առավել փորձված աշխատողներին, որոնք ընդունակ են խոշոր տնտեսություն ղեկավարելու։ Դրա շնորհիվ՝ զգալիորեն բարելավվեց կոլտնտեսությունների, և հատկապես խոշորացված կոլտնտեսությունների, նախագահների կազմը։ Այժմ կոլտնտեսությունների նախագահներից 126 մարդ ունեն գյուղատնտեսական բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Խոշորացված կոլտնտեսությունների նախագահների 135 տեղակալներ նույնպես գյուղատնտեսության մասնագետ են։ Խոշորացված կոլտնտեսություններում չկան տարրականից կամ միջնակարգից ցածր կրթություն ունեցող նախագահներ։

Կոլտնտեսությունների միավորումը զգալի չափով նպաստեց վարչակառավարչական ծախսերի կրճատմանը։ 1949 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի կոլտնտե-



սություններում վարչա-կառավարչական ապարատի ծախսերը կրճատվել են 1322 միլիոն վորով, որը տվել է տարեկան ավելի քան 240 հազար աշխօրի տնտեսում։ Վարչա-կառավարչական ապարատի այս կրճատումը հնարավորություն տվեց զգալիորեն ամրապնդելու կոլտնտեսությունների մշտական արտադրական բրիգադները և անասնապահական ֆերմաները։

Զգալի փոփոխություններ են տեղի ունեցել գյուղական պարտիական կազմակերպություններում։ Խոշորացված կոլտնտեսությունների պարտկազմակերպություններն ընդգրկում են ավելի մեծ թվով կոմունիստներ։ Խոշոր չափով բարելավվել է պարտիական-քաղաքական աշխատանքը գյուղում։

Մեծ է միավորված կոլտնտեսությունների դերը ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի պատմական որոշման հաջող կենսագործման ասպարեզում, որոշում, որի նպատակն է է՛լ ավելի զարգացնել գյուղատնտեսությունը։ Ռեսպուբլիկայի հացի պահանջը սեփական արտադրությամբ ապահովելու նպատակով՝ Հայաստանի կոլտնտեսություններն արդեն 1950 թվականին 28 հազար հեկտար ավելի շատ աշնանացան ցորեն են ցանել, քան 1949 թվականին։

Կոլտնտեսությունների խոշորացումը լայն հեռանկարներ է բաց անում ագրոքաղաքներ կառուցելու, կոլտնտեսային գյուղերը բարեկարգելու համար։ Հնարավորություններ են ստեղծվում արդեն մոտ ապագայում, իրենց իսկ կոլտնտեսությունների ուժերով ու միջոցներով ծավալելու նոր էլեկտրակայանների, տնտեսական ու արտադրական նոր շենքերի, ակումբների, կուլտուրայի տների, գրադարանների, հյուրանոցների, կոլտնտեսականների նոր բարեկարգ բնակարանների և մի ամբողջ շարք օբյեկտների շինարարությունը։ Բոլոր խոշորացված կոլտնտեսություններում ստեղծվել են մշտական շինարարական բրիգադաներ։ Հայաստանի 20 խոշորացված կոլտնտեսություններ արդեն պատվերներ են ներկայացրել ռեսպուբլիկական նախագծող կազմակերպություններին՝ ագրոքաղաքների հատակագծեր կազմելու համար։

Մանր կոլտնտեսությունների խոշորացումը, որ ապահովում է կոլտնտեսային արտադրության զարգացման և հանրային ֆոնդերի աճման տեմպերի ուժեղացումը, ինչպես նաև գյուղատնտեսության է՛լ ավելի հագեցումը մեքենայական տեխնիկայով, աշխատատար պրոցեսների էլեկտրիֆիկացումը, ագրո-



քաղաքների և բարեկարգ գյուղերի կառուցումը, որակյալ կադրերի աճումը և ագրոնոմիական գիտության նվաճումների լայն արմատավորումը արտադրության մեջ, էլ ավելի մեծ չափով ընդլայնում է գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման հնարավորությունները և ապահովում է գյուղատնտեսական աշխատանքը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակ դառնալու պրոցեսի արագացումը։ Գյուղատնտեսական աշխատանքի վերածումը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի՝ հանդիսանում է քաղաքի և գյուղի միջև եղած հակադրությունը վերջնականապես վերացնելու կարևորագույն նախադրյալը։

Սրանք են, բնավ ոչ բոլոր, այն տնտեսական և կազմակերպչական առավելությունները, որ ստեղծվել են կոլտնտեսային արտադրության մեջ, կոլտնտեսությունների խոշորացման ուղղությամբ կատարված աշխատանքի շնորհիվ։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

—O—

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## 1951 Թ. ՓԵՏՐՎԱՐԻ 25-Ը ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՕՐՆ Է. ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*1. Սովետական ժողովուրդը միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների առաջիկա ընտրություններին է գնում բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բուռն վերելքի պայմաններում, կենսագործելով կոմունիզմի կառուցման ստալինյան հոյակապ ծրագիրը։*

*2. Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունը տեղի է ունենում քաղաքական և աշխատանքային աննախընթաց վերելքի պայմաններում։*

*3. Մեծ Ստալինը միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների համաժողովրդական առաջին թեկնածուն է։*

*4. Ընկեր Ստալինի զինակիցները և մեր ժողովրդի*



*լավագույն զավակները կոմունիստների և անպարտիականների ստալինյան հզոր բլոկի թեկնածուներն են։*

*5. Քվեարկելով կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին՝ մենք կքվեարկենք սոցիալիստական շինարարության նորանոր հաջողությունների օգտին, ստալինյան արտաքին քաղաքականության օգտին։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի Կենտրոնական Կոմիտեի դիմումը բոլոր ընտրողներին, բանվորներին և բանվորուհիներին, գյուղացիներին և գեղջկուհիներին, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմիղի մարտիկներին, սովետական ինտելիգենցիային։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. փետրվարի 17-ի համարը։*

Մեծ Ստալինը հայ ժողովրդի առաջին թեկնածուն է։ *«Ս. Հ.» 1951 թ. հունվարի 17-ի առաջնորդողը։*

**Кандидаты блока коммунистов и беспартийных**, «Правда», 12 января 1951 г.

## II

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ։

*1. Լենինը և Ստալինը սովետական պետության զինված ուժերի ստեղծողներն են։*

*2. Սովետական Բանակը նոր տիպի բանակ է, որը հանդիսանում է ամենաառաջավոր՝ սոցիալիստական հասարակական և պետական կարգերի ծնունդը։*

3. Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը քաղաքացիական պատերազմի և խաղաղ շինարարության ժամանակաշրջանում։

4. Սովետական Զինված Ուժերի համաշխարհային պատմական հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում։

5. Սովետական ժողովրդի անձնվեր աշխատանքը Սովետական պետության տնտեսական և ռազմական հզորության հետագա բարձրացման հիմքն է հանդիսանում։

6. Աջակցության ակտիվ մասնակցությունը բանակին, օդային և ծովային նավատորմին օգնող կամավոր ընկերությունների աշխատանքներին՝ հանդիսանում է մեր երկրի պաշտպանունակության ամրապնդման կարևոր միջոցներից մեկը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին։

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.—Ստալինը և Սովետական զինված ուժերը։

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.— Հայրենական Մեծ պատերազմի հանճարեղ զորավարը։

Ի. Վ. Ստալինի համառոտ կենսագրության 6, 10 և 11-րդ գլուխները։



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Ի. Ա. Բենեդիկտով—*Սոցիալիստական գյուղատնտեսությունը և նրա հետագա զարգացման խնդիրները։* 31 էջ, գինը 30 կոպ.։

Արկադի Գայդար.— *Ընտիր երկեր։* 516 էջ, գինը 15 ռ. 50 կոպ.։

Պրոֆ. Մ. Գ. Չիժևսկի.— *Հողի մշակումը։* 60 էջ, գինը 1 ռուբլի։

Ն. Ա. Բլուխեր.— *Ընդհանուր տեղեկություններ բույսերի կյանքից։* 54 էջ, գինը 1 ռ. 10 կոպ.։

Ա. Ն. Կիսելև.— *Պայքար մոլախոտերի դեմ։* 55 էջ, գինը 1 ռ. 10 կոպ.։

Հ. Ա. Բունիաթյան.— *Կերի բազայի կազմակերպումը կոլխոզներում։* 35 էջ, գինը 50 կոպ.։

Ա. Չիլինգարյան— *Կաթնատու կովերի մթերատվության բարձրացման ուղիները։* 27 էջ, գինը 45 կոպ.։

Գ. Ա. Եսաուլով— *Գառների աճեցումը։* 35 էջ, գինը 55 կոպ.։

Դ. Ի. Գրուզև.— *Խոճկորների աճեցումը։* 23 էջ, գինը 30 կոպ.։

Ե. Վ. Կոժևնիկով.— *Մտրուկների աճեցումը։* 27 էջ, գինը 45 կոպ.։



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

